Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք:

ՀԿԿ կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՀՈՒԼԻՍ 14 1961



ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։



## ՀԱՆՐԱՅԻՆ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԳԼԽԱՔԱՆԱԿԻ ԱՃԸ 1961 ԹՎԱԿԱՆԻՆ (ՏՈԿՈՍՆԵՐՈՎ)



# Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

*Հիանալի շատ տրադիցիաներ ունեն սովետական մարդիկ և դրանցից մեկը՝ մեր Հայրենիքի, մեր ժողովրդի կյանքում մեծ ու նշանակալից իրադարձությունների պատվին բարձր պարտավորություններ ստանձնելն է, սոցիալիստական մրցության ծավալման միջոցով աշխատանքային նորանոր նվաճումներ ձեռք բերելը։*

*Մեր լայնարձակ երկրում ներկայումս այդպիսի մրցություն է ծավալվել առաջիկա մեծ ու բերկրալի իրադարձության՝ ՍՄԿՊ XXII համագումարի պատվին։ Ամենուրեք՝ գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, կառույցներում ու տրանսպորտում, հանքերում ու գիտահետազոտական հիմնարկներում, մեր ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում սովետական մարդիկ ձգտում են արժանավայել նվերներով դիմավորել հարազատ պարտիայի XXII համագումարը։ Համա-*



*գումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը օր-օրի նորանոր հերոսներ է ծնում, ի հայտ են գալիս բազմաթիվ հայրենասիրական նախաձեռնություններ, աշխատանքի նոր մեթոդներ ու ձևեր, բազմապատկվում է առաջավորների, նորարարների, մեր փարոսների թիվը։ Եվ այս բոլորը՝ շնորհիվ քաղաքական ու աշխատանքային հզոր վերելքի, շնորհիվ աշխատավորական մասսաների ստեղծագործական ակտիվության աննախընթաց աճի։*

*ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությանը նոր հուժկու թափ հաղորդեց ՍՄԿՊ Կենտկոմի վերջերս տեղի ունեցած պլենումը, որը լսեց և քննարկեց ՍՄԿՊ Կենտկոմի Առաջին քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը «ՍՄԿՊ Ծրագրի նախագծի մասին» և ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Ֆ. Ռ. Կոզլովի զեկուցումը «ՍՄԿՊ Կանոնադրության նախագծի մասին» ու ընդունեց համապատասխան որոշումներ։*

*Նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը ուժգին թափով ծավալվել է նաև մեր ռեսպուբլիկայում՝ Սովետական Հայաստանում։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը շարունակում է զարգանալ անշեղ վե-*

բելքի ուղիով, գյուղատնտեսության ասպարեզում ևս, չնայած անբարենպաստ կլիմայական պայմաններին, կան որոշակի հաջողություններ. Նկատելիորեն բարելավվել են շինարարական աշխատանքները: Արտադրական ձեռնարկությունների բանվորներն ու ծառայողները, կոլտնտեսականներն ու սովխոզների աշխատողները ձգտում են ժամկետից շուտ կատարել իրենց ստանձնած պարտավորությունները:

Հարազատ պարտիայի համագումարը դիմավորենք կոմունիստաբար— ահա նրանց նշանաբանը:

Գնալով ավելի ու ավելի է բորբոքվում պարտիայի XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության հուրը: Ձեռնարկությունների և կառույցների կոլեկտիվները պայքարում են աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, պլանները ժամկետից շուտ կատարելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու և որակը բարձրացնելու համար: Աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունների շնորհիվ ավելի լրիվ են օգտագործվում արտադրական կարողությունները, հայտնաբերվում են արտադրության նոր ռեզերվներ,



կատարելագործվում աշխատանքի կազմակերպման ձևերն ու մեթոդները:

Սոցիալիստական գյուղի աշխատավորներն անձնվիրաբար պայքարում են՝ կենսագործելու մեր երկրի գյուղատնտեսության հետագա վերելքի այն ծրագիրը, որը նշել է ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը:

Ահա Սովետական Հայաստանի աշխատավորների հայրենասիրական աշխատանքի մի քանի օրինակներ, որոնք բերկրանքով են լցնում մարդկանց սրտերը, նորանոր սխրանքների մղում:

Կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, Հայաստանի արդյունաբերության աշխատողները ժամկետից շուտ՝ հունիսի 26-ին կատարեցին համախառն արտադրանքի առաջին կիսամյակի պլանը: Արդյունաբերական արտադրանքի ծավալը նախորդ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ աճեց մոտ 10 տոկոսով: Գերակատարվեցին արտադրանքի կարևորագույն շատ տեսակների՝ այդ թվում էլեկտրաէներգիայի, ալյումինի, պղնձի, ծծմբաթթվի, սինթետիկ ամոնիումի, կաուստիկ սոդայի, հանքային պարարտանյութերի, ավտոդողերի, ցեմենտի, շիֆերի, մե-

տաքսե գործվածքների, կաթնամթերքների և արտադրանքի այլ տեսակների արտադրության պլանները։

Ինչպես միշտ, այժմ էլ առջևից են ընթանում ռեսպուբլիկայի մայրաքաղաքի՝ Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողների անձնակազմը և ծառայողները։ Մայրաքաղաքի արդյունաբերությունը ժամկետից շուտ կատարեց առաջին կիսամյակի պլանը՝ հասնելով 102,3 տոկոս ցուցանիշի ու երկրին տալով միլիոնավոր ռուբլիների արտապլանային արտադրանք։

Հատկապես մեծ են Վ. Ի. Լենինի անունը կրող էլեկտրամեքենաշինական գործարանի նվաճումները։ Գործարանում օրերս ավարտվեց նոր տիպի սինխրոն էլեկտրաշարժիչի արտադրության տեխնոլոգիայի յուրացումը։ Այստեղ հաջողությամբ է ընթանում նաև նոր կոնվեյերի սարքավորումը, որը հնարավորություն կտա հատուկ ավտոմատ կայանի միջոցով տրանսֆորմատորների ստուգումն ու փորձարկումը կատարել հենց կոնվեյերի վրա։ Դա կլինի առաջին այդպիսի կայանը մեր երկրում։

Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանը ընթացիկ տարվա 6 ամսում կատարել է 7 ամսվա պլան։ Արտադրանքի թողարկումն, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, այստեղ աճել է 70 տոկոսով։

Բարձր արտադրողական աշխատանքի, արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման լավ օրինակ են տալիս Երևանի Կիրովի անվան, ալյումինի, ավտոդողերի, հիդրոպոմպերի, Լուսավանի ներտաշ հաստոցների գործարանների, Ալավերդու պղնձաքիմիական, Կիրովականի քիմիական, Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատների և տասնյակ այլ ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնք նախահամագումարյան մրցության այս օրերին շարունակ գերակատարում են իրենց առաջադրանքները։ Այդ ձեռնարկություններում հազարավոր բանվորներ օրական մի քանի արտադրական նորմա են կատարում։

Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ընկեր Ն. Ս. Խրուշչովը, խոսելով ՍՄԿՊ առաջիկա XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություն-

ների ձեռք բերած հաջողությունների մասին, 
ասաց. «Ռեսպուբլիկայի բանվոր դասակար-
գի խանդավառության ու աշխատանքային
սխրագործությունները վստահություն են
ներշնչում, որ յոթնամյա պլանի առաջա-
դրանքները կկատարվեն և կգերակատար-
վեն»։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը տվեց լավագույն-
ներից լավագույնների անունները՝ Ղափանի
պղնձահանքային կոմբինատի բրիգադավար
Աշոտ Մելքոնյան, Կիրովի անվան գործարա-
նի ապարատավարների բրիգադավար Սերգեյ
Ամիրխանյան, «Քաղբնակշին» տրեստի որմ-
նադիր Խաչիկ Կոչկակարյան, որոնք արժա-
նացել են Սոցիալիստական Աշխատանքի Հե-
րոսի կոչման, կոմունիստական աշխատանքի
բրիգադաներում հաջողությամբ աշխատող-
ներ՝ Երևանի էլեկտրալամպերի գործարանի
բանվոր Ալեքսանդր Բորիսով, Երևանի էլեկ-
տրատեխնիկական գործարանի փականագործ
Բատիշ Գրիգորյան, Լենինականի գուլպայի
ֆաբրիկայի հյուսող բանվորուհի Բեթղեհեմ
Աբգարյան։

Արտադրության այս լավագույն մարդկանց
օրինակով են աշխատում շատ-շատերը։

Քիչ չեն նաև գյուղատնտեսության բնա-
գավառի առաջավորները, մեր փարոսները։



Հոկտեմբերյանի շրջանի Լենինի անվան կոլ-
տնտեսության անդամները հիանալի մշակել
են 400 հեկտար բամբակի դաշտերը, ինչպես
նաև խաղողի այգիները։ Կոլտնտեսության
տրակտորա-դաշտավարական բրիգադանե-
րում լայն թափ է ստացել համագումարի
պատվին ծավալված սոցիալիստական մրր-
ցությունը։

Շամշադինի շրջանի Նորաշեն գյուղի կոլ-
տնտեսության անդամները այս տարի մշա-
կում են 80 հեկտար եգիպտացորեն, որից
30-ը՝ հատիկի համար և 50-ը՝ կանաչ
զանգվածի։ Նրանք պարտավորվել են յուրա-
քանչյուր հեկտարից ստանալ 100 ցենտներ
հատիկ, 500 ցենտներ կանաչ զանգված։
Լաուրա Միրզոյանի, Ասյա Աթոյանի, Հրանտ
Գրիգորյանի ղեկավարած օղակները պայքա-
րում են հեկտարից 100 ցենտներ հատիկ
ստանալու համար։

Աշխատանքային սխրանքներ է գործում
Աշտարակի շրջանի Ուջան գյուղի կոլտնտե-
սության ծխախոտագործ-օղակավարուհի
Սեդա Ներսիսյանը։ Նրա ղեկավարած օղակը
անցյալ տարի Արագածի փեշերին աճեցրեց
ռեկորդային բերք և յուրաքանչյուր հեկտա-
րից հանձնեց 34 ցենտներ ծխախոտ։ Կոլ-
տնտեսային դաշտերի այդ փարոսը այս տա-

րի ձգտում է հասնել ավելի բարձր ցուցանիշի. նա պարտավորվել է հեկտարից ստանալ 37 ցենտներ հումք։

Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսության օղակավարուհի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսուհի Նոյեմզար Եղիազարյանի հայրենանվեր գործերի մասին գիտեն մեր երկրի բոլոր ծայրերում։ Այդ փարոսը պարտավորվել է այս տարի իր օղակի այգիներից հավաքել առնվազն 220 ցենտներ խաղող։

Պարտիայի XXII համագումարի պատվին ստանձնած պարտավորությունները գերազանց է կատարում Շիրակի դաշտավայրի փառաբանված ճակնդեղագործ, Ախուրյանի շրջանի Ախուրիկ գյուղի կոլտնտեսության օղակավարուհի Սեդա Սարգսյանը, որը պայքարում է հեկտարից 800 ցենտներ ճակնդեղի բերք ստանալու համար։

Ռեսպուբլիկայում լայն արձագանք գտավ Վեդու շրջանի Շիրազլու գյուղի կոլտնտեսության կոմբայնավարներ Վարազդատ Գասպարյանի, Պաբիր Ասադովի և Նիկողոս Գուրֆալյանի դիմումը՝ հացահատիկի բերքը արագ և անկորուստ հավաքելու մասին։



Այժմ այդ նշանաբանով են աշխատում շատ մեխանիզատորներ։

Ի պատիվ պարտիայի XXII համագումարի կատարվող խանդավառ աշխատանքի շատ օրինակներ կարելի է բերել նաև ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներից։

Նախահամագումարյան մրցության առաջավորների հայրենասիրական գործերը հիանալի հնարավորություն են ընձեռում աշխատավորների շրջանում նպատակասլաց ագիտացիոն աշխատանք կատարելու համար։ Ագիտատորները պետք է ձգտեն հետաքրքիր զրույցներով է՛լ ավելի բորբոքել ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը, մասսայականացնել առաջավորների ու փարոսների ուսանելի փորձը, հասնել այն բանին, որ արդյունաբերական ձեռնարկության, սովխոզի ու կոլտնտեսության, կառույցների ու տրանսպորտի յուրաքանչյուր աշխատող անձնական աշխատանքային նվերներով դիմավորի համագումարը։

Ճշմարտացի, ներգործուն ու ոգեշունչ խոսքով նպաստել, որպեսզի նորանոր նվաճումներ ձեռք բերվեն առաջիկայում։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

Սովետական ժողովուրդն ու նրա Զինված Ուժերը մեծագույն խանդավառությամբ հուլիսի 30-ին նշելու են ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի տրադիցիոն տոնը։ Ռազմա-Ծովային Նավատորմը հանդիսանում է մեր մեծ երկրի Զինված Ուժերի անբաժան մասը։ Նրա պատմությունը անխզելիորեն կապված է մեր ժողովրդի արտաքին ու ներքին թշնամիների դեմ մղած հերոսական պայքարի պատմության հետ։ Ծովում թշնամու դեմ մղած պայքարում հռչակվել են խիզախ ու տաղանդավոր ծովայիններ Փ. Փ. Ուշակովը, Մ. Պ. Լազարևը, Պ. Ս. Նախիմովը, Ս. Օ. Մակարովը և ուրիշներ։ Իր 200 տարվա փառավոր պատմության մեջ ռուսական Ռազմա-Ծովային Նավատորմը 24 խոշոր ճակատամարտեր է տվել և դրանցից միայն մեկում է պարտվել՝ Ցուսիմայում։

ՍՍՌՄ ռազմական նավաստիներն ու ծովագնացները հայտնի են նաև իրենց ծառայություններով գիտության և պրոգրեսի



ասպարեզում։։ Բավական է հիշել, որ մեր ծովագնացների աշխարհաշուրջ և հեռավոր ճանապարհորդությունների շնորհիվ աշխարհի քարտեզի վրա հանդես են եկել մոտ 600 ծովերի, կղզիների, ծոցերի, գետերի և արշիպելագների անուններ։ Ամբողջ աշխարհին հայտնի են ականավոր ծովագնացներ Դեժնևի, Չիրիկովի, Չելյուսկինի, եղբայրներ Լապտևների, Գոլովինի, Լազարևի, Նևելսկու, Սեդովի և ուրիշների պանծալի անունները։

Իրենց սիրասուն Հայրենիքի բարօրությանը ավելի մեծ և ավելի փառապանծ ծառայություններ են մատուցել սովետական ծովայինները։ Դեռևս ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին Սև և Բալթիկ ծովերի նավաստիները ցուցաբերել են ռևոլյուցիոն բարձր գիտակցականություն, նրանք ակտիվ կերպով արձագանքել են բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ելույթներին։ Բոլշևիկ նավաստի Գ. Ն. Վակուլենչուկի ղեկավարությամբ 1905 թվականի հունիսի 27-ին «Պոտյոմկին» զրահանավի վրա բռնկվեց զինված ապստամբություն, որը Վ. Ի. Լենինը բնութագրեց որպես ռևոլյուցիոն բանակի ստեղծման սկիզբ. 1905—1907 թթ. ռևոլյուցիոն շարժումներին

մասնակցեցին մոտ 15.000 նավաստիներ։ Սև և Բալթիկ ծովերի նավատորմերում այդ շարժումը գլխավորում էին բոլշևիկ նավաստիներ Ս. Պ. Զատնիկը, Ն. Գ. Անտոնենկոն, Ա. Ի. Գլադկովը և անպարտիական լեյտենանտ Շմիդտը։

Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո հազարավոր նավաստիներ ազատվեցին բանտերից կամ վերադարձան աքսորավայրերից ու ձեռնամուխ եղան ռևոլյուցիոն աշխատանքի։ 1917 թվականի ապրիլին Բալթյան Նավատորմում գործում էին 7.000 բոլշևիկներ, (ամբողջ պարտիայի կազմի 9 տոկոսը), իսկ օգոստոսին՝ 15.000։ Կոռնիլովշչինայի ջախջախմանը մասնակցել են 5.000 զինված նավաստիներ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան ազդարարվեց «Ավրորայի» հրետանային համազարկերով։ Ձմեռային պալատի գրոհողների առաջին շարքերում գտնվում էին Բալթյան Նավատորմի նավաստիները։

Քաղաքացիական պատերազմի և ինտերվենցիայի տարիներին Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ստեղծվեցին ու կոփվեցին սոցիալիստական պետության





Զինված Ուժերը։ 1921 թվականի մարտին պարտիայի 10-րդ համագումարը հատուկ որոշում է ընդունում ռազմա-ծովային նավատորմի հետագա հզորացման վերաբերյալ։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը քաջ գիտակցում էին, որ, ապրելով կապիտալիստական շրջապատման պայմաններում, աշխարհի ռեակցիոն ուժերը վաղ թե ուշ արշավելու են մեր երկրի վրա։ Ուստի նրանք հատուկ հոգատարությամբ էին վերաբերվում դեպի երկրի պաշտպանությունը։

1941—1945 թթ. Հայրենական Մեծ պատերազմը մեծագույն փորձություն էր ամբողջ սովետական ժողովրդի, նրա զինված ուժերի ու ռազմա-ծովային նավատորմի համար։ Ֆաշիստական Գերմանիան 1941 թվականի հունիսի 22-ին սովետական երկրի դեմ նետեց 190 դիվիզիա, 5.000 ինքնաթիռ, մոտ 3.500 տանկ և 50.000 հրանոթ ու ականանետ։ Արևմուտքի պետությունների և առաջին հերթին Անգլիայի, Ֆրանսիայի ու ԱՄՆ-ի տնտեսական օգնության ու քաղաքական թողտվության պայմաններում հիտլերյան Գերմանիան իր հաշիվներն արդեն մաքրել էր եվրոպական համարյա բոլոր երկրների հետ և, օգտագործելով նրանց

պոտենցիալ ուժերը, ենթադրում էր կարճ ժամանակամիջոցում ջախջախել սովետական զինված ուժերը և ստրկացնել նրա ժողովուրդներին:

Հայտնի են այն պայմանները, որոնցում հարկադրված էր գործել մեր բանակը: Դա դաժան փորձության մի շրջան էր մեր ժողովրդի ու բանակի համար: Անբարենպաստ պայմանները, որոնցում գործում էին մեր զինված ուժերը, ստիպեցին նրան ժամանակավորապես թողնելու մեր տերիտորիայի զգալի մասը: Սակայն սովետական ժողովրդի աշխատանքային սխրագործությունն ու ջերմ հայրենասիրությունը, սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությունը, մեր քաջարի բանակի հերոսությունը և մանավանդ Կոմունիստական պարտիայի ղեկավարությունը ապահովեցին ֆաշիստական բանակների ջախջախումը:

Այդ հերոսական էպոպեայում անմար փառքով պսակեց իրեն նաև սովետական Ռազմա-Ծովային Նավատորմը:

Շնորհիվ երկրի ինդուստրացման և ականավոր գիտնականների, նավաշինարարների ստեղծագործական աշխատանքի, Հայրենական պատերազմի նախօրյակին ռազմա-ծովային նավատորմն ուներ ժամա-



նակակից մարտական տեխնիկա և լավագույն կադրեր:

Պատերազմի հենց առաջին ամիսներին ծանր դրություն էր ստեղծվել Լենինգրադի ռազմաճակատում: Բալթյան Նավատորմի նավաստիները, օդաչուները իրենց համառ ու հերոսական մարտերով, իրենց անձնազոհությամբ հետ էին մղում թշնամու գրոհները, օգնում էին ցամաքային զորքերին, հերոսաբար պաշտպանում էին մեր ծովային բազաներն ու ամրոցները: Խանկո թերակղզու կայազորը, գեներալ-մայոր Կաբանովի և դիվիզիայի կոմիսար Ռասկինի գլխավորությամբ, երկար ժամանակ հերոսաբար հետ է մղում հիտլերյան բանակի գրոհները: Նա ոչնչացրեց թշնամու 5.000 զինվոր ու սպա, 2 ականակիր, 6 տորպեդային նավեր, 100 մանր-օժանդակ նավեր և 53 օդանավ: Այդ մարտերում իրենց փառքով պսակեցին կապիտան Գրանինը, ծովային օդաչուներ, հետագայում Սովետական Միության Հերոսներ Անտոնենկոն և Բրինկոն:

Իրենց անմահ փառքով պսակեցին Հյուսիսային Նավատորմի նավաստիները, որոնք ցամաքային զորքերի համագործակցությամբ տևական մարտերում հետ էին մղում թշնա-

*մու գրոհները և ապահովում մեր հյուսիսային կոմունիկացիաները: Այնպիսի հերոսներ, ինչպիսիք են Իվան Սիվկովը, Մահամեդ Հաջիևը և շատ ուրիշներ, հայտնի են մեր ամբողջ երկրում: Նրանք Հյուսիսային Նավատորմի փառքն էին: Ամենածանր ու լարված մարտերը մղում էր Սևծովյան Նավատորմի անձնակազմը՝ ծովակալ Օկտյաբրսկու հրամանատարությամբ: Միայն Օդեսայի վրա թշնամին 200 անգամ գրոհել է: Այստեղ աչքի ընկան փոխ-ծովակալ Գ. Վ. Ժուկովը, գնդապետ Օսիպովը և շատ-շատերը:*

*Մեր Զինված Ուժերի հերոսական պատմության մեջ Սևաստոպոլի պաշտպանությունը միշտ կմնա որպես խիզախության ու վառ հայրենասիրության ամուր փարոս:*

*Մեծ է մեր Ռազմա-Ծովային Ուժերի դերը նաև իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախման գործում: Խաղաղ օվկիանոսյան Նավատորմը պատվով կատարեց իր մարտական խնդիրը: Մեր Ռազմա-Ծովային Ուժերը, անցնելով ծանր փորձությունների միջով, անգնահատելի ծառայություններ մատուցեցին ընդհանուր հաղթանակի ապահովման գործին:*

*Ամբողջ պատերազմի ժամանակ սովե-*



*տական նավատորմը խորտակել է 1.341 և վնասել 908 ռազմական ու օժանդակ նավեր, ինչպես նաև 1.425 տրանսպորտ:*

*Ռազմական փառավոր գործերի համար Ռազմա-Ծովային Նավատորմի անձնակազմին հանձնվել են 350.000 շքանշաններ ու մեդալներ: Մոտ 500 հոգի արժանացել են Սովետական Միության Հերոսի կոչման: Ծովային օդաչուներից 4-ը արժանացել են կրկնակի Հերոսի կոչման, այդ թվում նաև հայ ժողովրդի պարծանք Նելսոն Ստեփանյանը: 78 ռազմանավերի և զորամասերի շնորհվել է Գվարդիական կոչում, իսկ 209 նավեր ու զորամասեր արժանացել են կառավարական պարգևների: Հետպատերազմյան շրջանում Ռազմա-Ծովային Ուժերը, ինչպես նաև ամբողջ մեր Զինված Ուժերը, կանգնած են Սովետական Միության ու ամբողջ սոցիալիստական լագերի աշխատավորության խաղաղ ստեղծագործ աշխատանքի պաշտպանության մարտական դիրքերում:*

*Սովետական կառավարությունը միշտ վարել է և վարում է խաղաղ համագործակցության ու խաղաղ գոյակցության քաղաքականություն: Նա հետևողականորեն առաջ է քաշում այնպիսի արմատական հարցեր, որոնց լուծումով վճռական շրջադարձ կկա-*

տարվեր միջազգային հարաբերությունների բարելավման գործում։ Այդպիսի պրոբլեմների թվին են պատկանում խաղաղության պայմանագրի կնքումը գերմանական երկու պետությունների հետ, միջուկային զենքի փորձարկումների դադարեցումը և լիակատար զինաթափումը։ Սակայն իմպերիալիստական խոշոր պետությունները, նրանց ռազմական կոալիցիաները՝ ԱՄՆ-ի ղեկավարությամբ, տենդագին կերպով սպառազինվում են և սոցիալիստական լագերին սպառնում նոր պատերազմի բորբոքումով։ Այսպիսի պայմաններում ՍՍՌՄ-ը ստիպված է ամենալուրջ կերպով մտահոգվելու իր Զինված Ուժերի, այդ թվում նաև Ռազմա-Ծովային Նավատորմի մարտունակության բարձրացմամբ։

Ճիշտ է, ժամանակակից պայմաններում, երբ բանակների գլխավոր հարվածող ուժը հանդիսանում են հրթիռային և ատոմային զորամասերը, բոլորովին չի թերագնահատվում ռազմա-ծովային ուժերի դերը։ Հաղթանակի հիմնական գրավականը եղել է և մնում է մարդը իր հոգևոր ու ֆիզիկական բոլոր հատկություններով, ինչպես նաև զենքի բոլոր տեսակների համագործակցությամբ։ ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան,



ԳՖՌ-ն շարունակում են հսկայական ներդրումներ կատարել ռազմա-ծովային նավատորմի հետագա հզորացման համար։ Նրանք հրաժարվում են նախկին գիգանտ-գծանավերի ու հածանավերի շինարարությունից։ Գլխավոր ուշադրությունը դարձվում է ավիակիրների, ջրասույզների և դեսանտային միջոցների զարգացմանը։ Հիմնական ուղղությունը, դա նավերի աշխատեցնելն է ատոմային շարժիչներով։ Այժմ ԱՄՆ-ը ունի մոտ 1.840 մարտական նավեր՝ տարբեր կարգի ու տարբեր հզորությամբ։

Մեծ Բրիտանիան ունի 500-ից ավելի տարբեր կարգի մարտական նավեր, իսկ Ֆրանսիան՝ 450։ Վերականգնվում է Արևմտագերմանական ռազմածովային նավատորմը, որն իր կազմում այժմ ունի 170-ից ավելի մարտական նավեր։

Սովետական Միությունը որպես աշխարհի ամենահզոր ծովային տերություններից մեկը, չի կարող անտարբեր դիտել իմպերիալիստական պետությունների սպառազինությունների մրցավազքը։

Սովետական Միությունը ձեռնարկում է բոլոր միջոցները, որպեսզի երկրի Զինված

Ուժերը միշտ գտնվեն իրենց բարձրության վրա։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովը բազմիցս հայտարարել է, որ մեր երկիրն ունի ամեն ինչ՝ թշնամուն վճռական հարված տալու համար, եթե նա հանդգնի դիմել ավանտյուրայի։ Ռազմա-Ծովային Նավատորմի հետագա զարգացման ասպարեզում ՍՄԿԿ-ը հաշվի է առնում ժամանակակից ռազմական տեխնիկայի զարգացումը, ապագա պատերազմի բնույթը և երկրի տերիտորիալ, աշխարհագրական պայմանները։ Մեծ ուշադրություն է դարձվում ատոմային շարժիչներով գործող ջրասույզ նավերի կառուցմանը։

Ռազմա-Ծովային ուժերում իրենց պատվավոր տեղն են գրավում ծովային օդաչուները, որոնք խոշորագույն չափով նպաստում են ռազմա-ծովային նավատորմի մարտական գործողություններին։

Հենվելով երկրի հզոր նյութական-տեխնիկական բազայի վրա, ունենալով բարձր որակի մասնագետներ, սովետական Ռազմա-Ծովային Նավատորմի անձնակազմը կատարելագործում է իր ռազմական արվեստը և արթուն կերպով հսկում Հայրենիքի սահմանները։

ԱՇՈՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Գնդապետ, պատմական գիտությունների թեկնածու



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ՀԵՐԹԱԿԱՆ ԶՐՈՒՅՑԸ

Գործարանային ռադիոհանգույցը հայտարարում է աշխատանքի ընդմիջում։ Քիչ անց Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի № 29 ցեխի մոնտաժային տեղամասի բանվորները հավաքվում են կարմիր անկյունում՝ լսելու իրենց ագիտատորի հերթական զրույցը։

Ագիտատոր ընկ. Նորայր Մովսիսյանը, ողջունելով ունկնդիրներին, սկսում է զրույցը։ Մինչ այդ, նա հանգամանորեն նախապատրաստվել էր զրույցի։

— Ընկերներ,— ասում է նա,— ինչպես նախօրոք պայմանավորվել ենք, այսօրվա զրույցը կնվիրենք պարտիայի XXII համագումարի պատվին սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարմանը։
— Ագիտատորը շարունակում է.

— Խանդավառ օրեր են ապրում մեր Հայրենիքի աշխատավորները։ Բոլորը համակված են մեկ ցանկությամբ, պարտիայի առաջիկա համագումարը նշանավորել ար-

ժանավայել գործերով, այն դիմավորել կոմունիստաբար։

Այս օրերին,— ասում է ագիտատորը,— անձնվեր աշխատանքի հիանալի օրինակ է ցույց տալիս նաև մեր գործարանի կոլեկտիվը։ Կատարելով Մինսկի էլեկտրատեխնիկական, Բաքվի և Շանհայի էլեկտրամեքենաշինական գործարանների կոլեկտիվների հետ կնքած սոցիալիստական մրցության պարտավորությունները, գործարանի կոլեկտիվը արտադրական բարձր ցուցանիշներով փակեց հունիս ամիսը։

Ամենից առաջ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, ցեխերը աշխատեցին հստակ ու համագործակցված։ Հենց այդ էլ վճռեց մրցության մեջ հաղթանակ տանելու ելքը։ Բնորոշ է, որ կոլեկտիվը, գերակատարելով ամսվա պլանը, ապահովեց նաև երկրորդ եռամսյակի, ինչպես նաև կիսամյակի պլանը։ Երկրորդ եռամսյակը կոլեկտիվի համար արտադրական փայլուն ցուցանիշների եռամսյակ էր։ Նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման, նոր, կատարելագործված մեքենաների իրացման եռամսյակ։ Այդ ժամանակամիջոցում ձեռնարկության կոլեկտիվը ապրանքային արտադրանքի պլանը կատա-



րեց 105,8, իսկ համախառն արտադրանքինը՝ 103,8 տոկոսով։ Կոլեկտիվը ապահովեց նաև նոմենկլատուրայով նախատեսված արտադրանքների պլանը։ Մինչև 100 կվտ հզորության գեներատորների պլանը կատարված է 100,2 տոկոսով, 100 կվտ-ից բարձր գեներատորներինը՝ 101,7, էլեկտրաշարժիչներինը՝ 100,3, շարժական էլեկտրակայաններինը՝ 100,1, ուժային տրանսֆորմատորներինը 104,4, կառավարման վահաններինը՝ 103,3, արդուկներինը՝ 100 տոկոսով։

Այդ ամենը հանգեցրեց այն բանին, որ մենք երկրորդ եռամսյակում արտադրական միևնույն տարածությունից թողարկեցինք 17,5 տոկոսով ավելի արտադրանք, քան թողարկել էինք նախորդ եռամսյակում։

Երկրորդ եռամսյակի տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներն զգալիորեն բարելավեցին ձեռնարկության ընթացիկ տարվա առաջին կիսամյակի արդյունքները։ Կիսամյակի համախառն արտադրանքի պլանը կատարվեց 102,2, իսկ ապրանքայինը՝ 105,4 տոկոսով։ Եթե այդ արդյունքները համեմատելու լինենք նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի հետ, ապա կտեսնենք, որ այս կիսամյակում ձեռնար-

կության թողարկած համախառն արտադրանքը աճել է 26,5, իսկ ապրանքայինը՝ 14,1 տոկոսով։

Ագիտատորն այնուհետև բերում է նոր թվեր, որոնք նախորդների պես արտաքուստ պարզ են, հասարակ, կարծես սովորական։ Բայց որ՞քան իմաստ կա այդ թվերի մեջ, որքա՞ն բովանդակություն։ Ունկնդիրներն ուշադիր հետևում են ագիտատորին ու խորհում.

— Այդ թվերով արտահայտված է մեր կոլեկտիվի լավ աշխատանքը։ Գործարանի թողարկած հազարավոր տրանսֆորմատորներ ու շարժական էլեկտրակայաններ արդեն լույս են սփռում հեռավոր Սախալինում ու Ինդոնեզիայում, Մեքսիկայում ու Ղազախստանում, Ալբանիայում ու Հնդկաստանում։ Հազարավոր մեքենաներ են ուժ տալիս Ռումինիայի ածխահատին ու Քաջարանի հանքափորին, Կամչատկայի ձկնորսներին ու Հեռավոր Հյուսիսի բեվեռախույզին... Այդ թվերի տակ կյանքն է, կյանքն այսօրվա պայծառ, կյանքը գալիք՝ ավելի լուսաշող։

Մրցության առաջավորներին խրախուսելու նպատակով ագիտատորը խոսում է այն



բազմաթիվ խոչընդոտների ու դժվարությունների մասին, որ հաղթահարել են նրանք։

— Գլխավոր տեխնոլոգի և գլխավոր մեխանիկի բաժինների ու նրանց ենթակա ցեխերի կոլեկտիվները,— ասում է ագիտատորը,— ընթացիկ տարում շատ ուժ ու եռանդ գործադրեցին գործարանում կոնվեյերային արտադրության ընդլայնման ուղղությամբ։ Այդ կոլեկտիվների ջանքերով առաջին կիսամյակում գործարանում նախագծվեցին, պատրաստվեցին ու մոնտաժվեցին և ժամանակին շահագործման հանձնվեցին № 12 ցեխի ներկման ու չորացման, № 15 ցեխի «ԱԴ—5» մարկայի ագրեգատների հավաքման քայլող կոնվեյերները, կոմերիտմիության անվան տրանսֆորմատորների հավաքման № 10 ցեխի չորացման կախովի կոնվեյերը և այլն։ Այդ շնորհակալ գործում մեծ է նաև մեր կոլեկտիվի ավանդը։ Հիշյալ կոնվեյերները պատրաստվել են մեր ցեխում, նրանց մոնտաժումը կատարվել է մեր կոլեկտիվի և մասնավորապես Ա. Մնացականյանի, Վ. Ներսիսյանի, Հ. Կարճիկյանի և Ց. Պողոսյանի ղեկավարած մոնտաժողների բրիգադների կողմից։

— Ընթացիկ տարվա առաջին կիսամյա-

կը,— շարունակում է ագիտատոր Ն. Մովսիսյանը,— մեր կոլեկտիվի համար բնորոշ էր նրանով, որ կոլեկտիվը լուրջ աշխատանքներ կատարեց գեներատորների, տրանսֆորմատորների, կառավարման վահանների արտադրության տեխնիկական հագեցվածությունը բարձրացնելու ուղղությամբ։ Վերցնենք Թեկուզ գեներատորների հավաքման № 9 ցեխի օրինակը. այստեղ այժմ յուրաքանչյուր բանվորին բաժին է ընկնում 1,4 մետր երկարության կոնվեյերային գիծ, 3 բանվորին՝ մեկ նորմալ սարքավորում, 13 բանվորին՝ մեկ հատուկ տեխնիկական սարքավորում, 10 բանվորին՝ մեկ տեղափոխող և ամբարձիչ սարքավորում և յուրաքանչյուր բանվորին՝ երկու հարմարանք ու դրոշմ։

Կոլեկտիվը անցած կիսամյակում լուրջ հաջողություններ ունեցավ նաև նոր, կատարելագործված մեքենաների իրացման և նրանց սերիական արտադրության կազմակերպման ուղղությամբ։ Այժմ գործարանից դեպի Միության տարբեր ծայրերն են ուղարկվում նոր և կատարելագործված մարկաների տրանսֆորմատորային ենթակայաններ։

— Այդ նոր մեքենաները լուրջ ավանդ



են հայրենական մեքենաշինության մեջ։ Նրանք իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով չեն զիջում, այլ, ընդհակառակը, գերազանցում են արտասահմանյան ամենանշանավոր ֆիրմաների ամենաառաջնակարգ մեքենաներին. օրինակ՝ «ԵՍ—81—6Ս» գեներատորը, որը նախատեսված է ժողովրդական տնտեսության մեջ ստացիոնար կայանքների համար։

Զրույցի վերջում ագիտատորը խոսեց ունկնդիրների առաջիկա անելիքների մասին և նրանց ուշադրությունը բևեռեց ստանձնած պարտավորությունները ժամկետից շուտ, մինչև համագումարը կատարելու վրա։

— Կիսամյակը փակված է հաջողությամբ,—շարունակում է ագիտատորը։—Այդ օրինական հպարտություն է առաջ բերում կոլեկտիվի անդամների շրջանում։ Բայց մենք չենք կարող հանգստանալ, չենք կարող տարվել հաջողություններով։ Առաջիկայում մեզ մեծ գործեր են սպասում։ Երրորդ եռամսյակում մենք պետք է իրացնենք նոր մեքենաներ, մոնտաժենք ու շահագործման հանձնենք նոր կոնվեյերներ, արմատավորենք նոր տեխնիկա ու տեխնոլոգիա։ Նախահամագումարյան սոցիալիստական մըր-

ցության պայմանագրով մենք պարտավորվել ենք երկրորդ կիսամյակում սերիական արտադրությունից հանել 8 տիպի հնացած էլեկտրասարքավորումներ, դրանք փոխարինելով նոր, ավելի կատարելագործված մեքենաներով։ Բացի այդ, մեր կոլեկտիվը պարտավորվել է յուրացնել արտադրանքի 15 նոր տեսակներ։ Մինչև համագումարը մենք պետք է գործարկենք տրանսֆորմատորների ավտոմատ փորձարկման կայանը և բազմաթիվ ուրիշ աշխատանքներ։ Այդ ամենի հետ միասին մենք պետք է ապահովենք նաև երրորդ եռամսյակի պլանը, որը նախորդ եռամսյակի համեմատությամբ 8 տոկոսով բարձր է։ Երրորդ եռամսյակի մեր բնագծերն են. արտադրել շատ գեներատորներ, 6.100 շարժական էլեկտրակայան, 8.800 կառավարման վահան, 94.000 արդուկ, 955.000 կվտ ընդհանուր հզորության տրանսֆորմատոր...

Ավարտելով իր զրույցը, ագիտատորը պատասխանում է ունկնդիրների հարցերին և նրանց հիշեցնում, որ առաջիկայում նրանք մեծ անելիքներ ունեն։ Նա պարզաբանում է տեղամասի կոլեկտիվի առջև դրված առաջնահերթ խնդիրները։

**Ե. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**



# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԵՌԱԿԱ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ

Արդեն երկրորդ տարին է, որ մեր ագիտատորները հեռակա կոնֆերանսի միջոցով օգնում են խմբագրությանը՝ «Ագիտատորի բլոկնոտ»-ը ավելի բովանդակալից ու հետաքրքիր դարձնելու գործում։ Մասնակցելով հեռակա կոնֆերանսին, ագիտատորները խմբագրությանը գրում են, թե «Ագիտատորի բլոկնոտ»-ում լույս տեսած որ հոդվածները և զրույցներն են իրենց դուր եկել, որ նյութերն են իրենք օգտագործել զրույցի ժամանակ։ Նրանք միաժամանակ գրում են, թե իրենք ինչ են ցանկանում, որ տպագրվի «Ագիտատորի բլոկնոտ»-ում և այդ կապակցությամբ օգտակար խորհուրդներ են տալիս։ Օրինակ, Երևանի Ալյումինի գործարանից ագիտատոր Շ. Խաչատրյանը խմբագրությանը խորհուրդ է տալիս հաճախակի տպագրել ագիտատորների այնպիսի զրույցներ, «Օգտագործիր զրույցի ժամանակ» խորագրով այնպիսի թվեր ու փաստեր, որոնք ցույց տան, թե որտեղ ինչպես են կատարվում պարտիայի XXII համագու-

մարի պատվին ստանձնած պարտավորությունները։

Ագիտատոր ընկ. Խաչատրյանի խորհուրդը շատ օգտակար է։ Չէ՞ որ այժմ սոցիալիստական մրցության ամեն մի մասնակից՝ բանվոր, թե կոլտնտեսական, ինժեներ, թե գիտնական, համակված է միայն մեկ ցանկությամբ՝ պատվով կատարել ստանձնած պարտավորությունները և հարազատ Կոմունիստական պարտիայի համագումարը դիմավորել նոր հաջողություններով։

Վեդու շրջանի Արմաշի այգեպտղաբուծական սովխոզի ագիտատոր Ա. Հայրապետյանը նպատակահարմար է գտնում «Ագիտատորի բլոկնոտ»-ում հաճախակի տպագրել գյուղատնտեսական թեմաներով զրույցներ և հոդվածներ։

— Հարկավոր է,— ասում է նա,— տպագրել այնպիսի նյութեր, որոնք ցույց տան գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու ուղիները և հանգամանորեն պարզաբանեն գյուղատնտեսության առաջավորների փորձը։

Որպեսզի գյուղատնտեսության բնագավառում աշխատող ագիտատորների զրույցները լինեն ավելի բովանդակալից և ավելի



նպատակասլաց, ագիտատոր Ա. Հայրապետյանը խորհուրդ է տալիս զրույցներ տպագրել այգիների մշակության, հատկապես խաղողի այգիների մշակությունը բարելավելու, պարարտանյութերն արդյունավետ օգտագործելու, մատղաշների խնամքը լավ կազմակերպելու մասին։

Ագիտատոր Միքայել Մկրտչյանը, Սիսիանի շրջանի Սառնակունք գյուղից, կոլտնտեսականների շրջանում կատարվող քաղաքական-բացատրական աշխատանքի պրակտիկան նկատի ունենալով, խորհուրդ է տալիս հաճախակի համառոտակի տեղեկություններ տպագրել Սովետական Միության, Ժողովրդական Դեմոկրատիայի երկրների, ինչպես նաև գաղութակալությունից ազատագրված երկրների պետական խոշորագույն գործիչների մասին։

— Հաճախ ագիտացիոն զրույցների ժամանակ, ասում է նա,— ունկնդիրները մեզ հարց են տալիս ինչպես վերոհիշյալ երկրների, այնպես էլ խաղաղության պրոգրեսի համար պայքարող համաշխարհային գործիչների մասին։ Որպեսզի ամոթով չմնանք նրանց առջև, անհրաժեշտ է «Ագիտատորի բլոկնոտ»-ի էջերում տպագրել այնպիսի նյութեր, որոնց միջոցով մենք կարողա-

նանք ծանոթանալ այդ խոշորագույն գործիչների կենսագրությանը։

Մեր երկրում բուռն թափով զարգանում է գիտությունը։ Ոչ մի հասարակարգ այնքան շահագրգռված չէ գիտության զարգացմամբ և նրա զարգացման համար այնպիսի պայմաններ չի ստեղծում, որքան սովետական սոցիալիստական կարգը։ Սովետական գիտության նվաճումները հիացմունք են պատճառում ամբողջ աշխարհին։ Իրոք, որ մեր Հայրենիքում մեծ հաջողությամբ լուծվում են գիտության ու տեխնիկայի զարգացման բազմաթիվ բարդ պրոբլեմներ։

Այդ կապակցությամբ շատ ագիտատորներ և ընթերցողներ ցանկություն են հայտնում, որ «Ագիտատորի բլոկնոտ»-ում հաճախակի տպագրվեն տեղեկություններ սովետական առաջավոր գիտության ու տեխնիկայի հաջողությունների մասին։

Հրազդանի շրջանի Թաքարլուի սովխոզի ագիտկոլեկտիվի ղեկավար Ս. Դանիելյանը ցանկանում է, որ «Ագիտատորի բլոկնոտ»-ում ավելի շատ տպագրվեն գիտության ու տեխնիկայի նվաճումների և նորությունների մասին տեղեկություններ։ Նա ցանկանում է նաև, որ «Ագիտատորի բլոկ-





նոտ»-ում պարբերաբար նյութեր տպագրվեն ագիտացիոն աշխատանքի փորձի փոխանակման վերաբերյալ և խմբագրության օգնությամբ գործնականում ագիտատորները ուսումնասիրեն ու ծանոթանան առաջավոր ագիտկոլեկտիվների աշխատանքի դրական փորձի հետ։

«Ագիտատորի բլոկնոտ»-ի հեղինակային ակտիվից և ագիտատորներից շատերը, նկատի ունենալով ագիտատորներին և հատկապես սկսնակ ագիտատորներին մեթոդական օգնություն ցույց տալու անհրաժեշտությունը, խմբագրությանը խորհուրդ են տալիս «Օգնություն ագիտատորին» խորագրով հաճախակի տպագրել այնպիսի զրույցներ ու հոդվածներ, որոնք օգնեն ագիտատորներին, որպեսզի նրանք բովանդակալից ու նպատակասլաց զրույցներ ունենան ունկնդիրների հետ։

— Մեթոդական բնույթի հոդվածներն ու զրույցները,— գրում է «Ագիտատորի բլոկնոտ»-ի հեղինակային ակտիվ Հր. Կարապետյանը,— լավագույն միջոց են ագիտացիոն զրույցներն ավելի հետաքրքիր, նպատակասլաց ու բովանդակալից դարձնելու գործում։— Մեր ագիտատորները,— շարունակում է նա,— քաղաքական-բացատրա-

կան աշխատանքի պրակտիկայից գիտեն, թե որքան մեծ օգնություն է ագիտատորի համար, երբ նա կարդում է ու սովորում, թե ինչպես ինքը պետք է ընտրի զրույցի թեման, ինչպես պետք է նախապատրաստվի զրույցի, ինչպես պետք է օգտագործի գեղարվեստական գրականությունը զրույցի ժամանակ և այլն։

Հեռակա կոնֆերանսի որոշ մասնակիցներ միանգամայն իրավացի են, որ մեծ կարևորություն են տալիս զրույցը քննադատական դիտողություններով հարստացնելուն։ Ագիտացիոն աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ զրույցն ավելի հետաքրքիր ու նպատակասլաց է դառնում, երբ ագիտատորը, մրցության առաջավորներին խրախուսելու հետ միասին, բացահայտում է թերությունները, պարսավանքի ենթարկում լոդրերին ու ծրիակերներին։

Երևանի ձեթ-օճառ կոմբինատից ընկ. Խ. Մարտիրոսյանը գրում է, որ ագիտատորը չի կարող հանդուրժել որևէ թերություն։ Ուստի նա զրույցների ընթացքում պետք է քննադատի թերությունները և պարզաբանի նրանց վերացման ուղիները։ «Ագիտատորի բլոկնոտ»-ում պետք է տպագրվեն օրինակելի զրույցներ այն մասին, թե ինչպես պետք է ագիտացիան օգտագործել աչքակապությամբ զբաղվողների, լոդրերի, խուլիգանների ու ծրիակերների դեմ պայքարելու գործում։

Մի շարք ագիտատորներ և ընթերցողներ ցանկություն են հայտնում, որ «Ագիտատորի բլոկնոտ»-ում հաճախակի զրույցներ և հոդվածներ տպագրվեն միջազգային թեմաներով։

Խմբագրական կոլեգիան շնորհակալություն է հայտնում հեռակա կոնֆերանսի բոլոր մասնակիցներին, որոնք իրենց խելացի դիտողություններով օգնում են «Ագիտատորի բլոկնոտ»-ը առաջիկայում ավելի հեշտ, հետաքրքիր ու բովանդակալից դարձնելու գործին։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Կոմունիստական պարտիան բացի ժողովրդի շահերից ուրիշ շահեր չունի

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ կոմունիստական պարտիայի դերի մասին, *Երկեր, հատոր 31, էջ 283—288, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ղեկավար և կազմակերպող ուժըն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված զեկուցումից, էջ 158—173, Հայպետհրատ, 1959 թ.։*

ՍՄԿՊ Ծրագրի նախագծի մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ՝ ընդունված 1961 թվականի հունիսի 19-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 20-ի համարում։*

ՍՄԿՊ Կանոնադրության նախագծի մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը ընկեր Ֆ. Ռ. Կոզլովի զեկուցման առթիվ՝ ընդունված 1961 թվականի հունիսի 19-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 20-ի համարում։*



Կոմունիզմն անպարտելի ուժ է դարձել, «Պրավդա»-ի 1961 թվականի հուլիսի 1-ի առաջնորդողը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 2-ի համարում։*

## 2. Նոր հաջողություններով դիմավորենք ՍՄԿՊ XXII համագումարը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Նոր թափ հաղորդել նախահամագումարյան սոցիալիստական մրցությանը։ *Նյութեր «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 8-ի համարում։*

Ավելի բարձր նախահամագումարյան մրցության դրոշը, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 7-ի առաջնորդող հոդվածը։*

Ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի *(Թվեր և փաստեր), տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1961 թվականի 12—13 համարներում։*

## 3. Արագ, ամուր և էժան կառուցելը յուրաքանչյուր շինարարի պատվի գործն է *(Շինարարի Օրվա առթիվ)*

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Քաղաքների բարեկարգման և գեղեցկացման համար, *«Պրավդա»-ի մայիսի 29-ի առաջնորդող հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի մայիսի 31-ի համարում։*

Ուշադրությունը բևեռել կարևորագույն օբյեկտների շինարարությանը, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 28-ի առաջնորդողը։*

Արագ տեմպեր հաղորդել կապիտալ շինարարությանը, *նյութեր Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի ակտիվի ժողովի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 9-ի համարում։*

Դպրոցաշինարարությունը առաջնահերթ գործ է, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 15-ի առաջնորդողը։*

Հայրենի տան շինարարը, *հոդված «Մեր օրերի հերոսները շարքից»— Սոցիալիստական աշխատանքի Հերոս Խաչիկ Կոշկակարյանի մասին, «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 21-ի համարում։*

Շինարար՝ այդ հպարտ է հնչում, *նյութեր երիտասարդ շինարարների համամիութենական խորհրդակցության մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մարտի 11-ի համարում։*

## 4. Ժամանակին և առանց կորստի հավաքենք բերքը, արդյունավետ օգտագործենք գյուղատնտեսական տեխնիկան

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ժողովրդի բարեկեցության բարձրացումը և գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման խնդիրները, ճառ, *արտասանած ՍՄԿԿ Կենտկոմի 1961 թվականի Հուն-*



*վարյան պլենումում, առանձին գրքույկ, Հայպետհրատ, 1961։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— ՍՄԿԿ Կենտկոմի 1961 թվականի Հունվարյան պլենումի որոշման կատարումն ապահովող միջոցառումների մասին, *զեկուցում, տրված Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 7-ի համարում։*

Նոր թափ գյուղատնտեսական աշխատանքներին, *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 27-ի համարում։*

Բերքահավաք, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 4-ի առաջնորդող հոդվածը։*

## 5. Անասունների սեփական կերով ապահովելը կոլտնտեսությունների կարևորագույն խնդիրն է

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Հողագործության ու անասնաբուծության մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի 1960 թվականի պետական պլանի ու սոցիալիստական պարտավորությունների կատարման և գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *ՍՄԿԿ Կենտկոմի 1961 թվականի Հունվարյան պլենումի որոշումը, առանձին գրքույկ, Հայպետհրատ, 1961։*

կերի կուտակումն առաջնահերթ խնդիր է: Լայն ճակատով ծավալենք խոտհնձի և կերի սիլոսացման աշխատանքները, հանրային հոտն ապահովենք կերի առատ պաշարով, *նյութեր, «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 8-ի համարում:*

Լիովին օգտագործենք անասնաբուծության զարգացման ռեզերվները, *նյութեր, «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 6-ի համարում:*

Հայաստանի անասնաբուծության զարգացումը յոթնամյակում, *առանձին գրքույկ, Հայպետհրատ, 1960:*

## 6. Համբակի, ծխախոտի, եգիպտացորենի լավ մշակությունը բարձր բերքի երաշխիքն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Լիովին օգտագործել Անդրկովկասի գյուղատնտեսության բոլոր ռեզերվները: *Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում արտասանած ճառից, առանձին գրքույկ, Հայպետհրատ, 1961:*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— ՍՄԿԿ Կենտկոմի 1961 թվականի Հունվարյան պլենումի որոշման կատարումն ապահովող միջոցառումների մասին, *զեկուցում, տպված Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 7-ի համարում:*



## 7. Հանուն մեր երկրի բարձրագույն դպրոցի հետագա զարգացման և կատարելագործման

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ողջույնը բարձրագույն դպրոցի աշխատողների համամիութենական խորհրդակցության մասնակիցներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 5-ի համարում:*

Բարձրագույն դպրոցի աշխատողների համամիութենական խորհրդակցության Դիմումը ՍՍՌՄ բարձրագույն ուսումնական հաստատությունների պրոֆեսորներին, դասախոսներին, ասպիրանտներին, ուսանողներին, բանվորներին և ծառայողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 8-ի համարում:*

Բարձրագույն դպրոցի աշխատողների Համամիութենական խորհրդակցությունում, *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 5—9-ի համարներում:*

## 8. Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր կնքելը խաղաղության ամրապնդման ուղին է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած 1961 թվականի հունիսի 21-ին Մոսկվայի հասարակայնության ներկայացուցիչների ժողովում, Հայրենական Մեծ պա-

տերազմն սկսելու 20-ամյակի կապակցությամբ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 22-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Ելույթ ռադիոյով և հեռուստատեսությամբ, 1961 թվականի հունիսի 15-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 16-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Ճառ, արտասանած 1961 թվականի հուլիսի 8-ին, զինվորական ակադեմիաների շրջանավարտների հանդիպմանը պարտիայի և կառավարության ղեկավարների հետ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 5-ի համարում։*

Սովետական կառավարության նոտան ԱՄՆ-ի կառավարությանը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 8-ի համարում։*

Ժամանակն է լուծել միջազգային հասունացած հարցերը, *«Պրավդա»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 18-ի համարում։*

Խաղաղությունը բոլոր ժողովուրդների գործն է, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 24-ի համարում։*



Նշումների համար

Նշումների համար

СОДЕРЖАНИЕ

НАГЛЯДНЫЕ МАТЕРИАЛЫ



МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ



ОТВЕТЫ ЧИТАТЕЛЯМ



В ПОМОЩЬ АГИТАТОРАМ



Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ա. Գ. ԼԱՇԻՆ.— ՍԱՌՄ Կոնստանցիա, էջ 170, գինը 37 կ.:

Շ. Ն. ՊԵՏՐՈՍՅԱՆ — Սովետական պետականության կազմավորումը և զարգացումը Հայաստանում, էջ 277, գինը 54 կ.:

ԵՐՎԱՆԴ ՕՏՅԱՆ — Երկերի ժողովածու, էջ 499, Հատոր երրորդ, գինը 87 կ.:

Շ. ՊՈՂՈՍՅԱՆ — Առաջավոր ոչխարաբույծ Ավագ Զամբաստանի փորձը, էջ 57, գինը 6 կ.:

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 14 1961 г.

ՎՖ 02224 370 Տպաքանակ 8284

Հանձնված է արտադրության 14/VII 1961 թ.:
Ստորագրված է տպագրության 22/VII 1961 թ.:

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արտադրության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8:

Գինը 8 կոպ.